## Լոնտոնը Աշխատաւորներուն ձեռքը անցաւ

Լոնտոնի քաղաքապետական ընտրութեանց մէջ փայլուն յաղթանակ մը տարին աշխատաւորականները։ 1888էն ի վեր առաջին անգամ ըլլալով, քաղաքին վարչութիւնը կ'անցնի աշխատաւորականներուն ձեռքը, երեք տարուան համար։ 1931ի ընտրութիւններով քաղաքապետական խորհուրդը կը բաղկանար 12 անդամներէ, որոնց 83ը պահպանողական, 35ը աշխատաւորական, 6ը ազատական։ Մարտ 8ի լրացուցիչ ընտրութիւններուն հետեւանքով, ազատականները բոլորովին ջնջուեցան, իսկ աշխատաւորականները 69 աթոռ շահեցան պահպանողականներու 55ին դէմ։ Այժմ ունին 14 ձայնի մեծամասնութիւն, մինչդեռ 1913ին միայն երկու աթոռ ունէին։

## Տարսոնի Թուրքերը միս չպիտի ուտեն

Պոլսէն կը հեռագրեն մարտ 9 թուականով.—

*Տարսոնի բնակիչները զայրանալով մսավաճառներու չարաշահութեանց դէմ, որոշեցին մէկ ամիս ոչխարի միս չուտել։ Արդէն մէկ շաբաթը անցած է, եւ ժողովուրդը որոշած է լրացնել մնացեալ երեք շաբաթն ալ։*

### ՓՈՔՐ ՀԱՄԱՁԱՅՆՈՒԹԻՒՆԸ ԵՒ ՄՈՍԿՈՒԱ

*Պելկրատի դիւանագիտական շրջանակներուն մէջ կը հաւատեն թէ մինչեւ ապրիլ Փոքր Համաձայնութեան պետութիւններն ալ — Եուկոսլավիա, Ռումանիա եւ Չեխոսլովաքիա — երեւութապէս պիտի ճանչնան խորհրդային իշխանութիւնը։ Այս ճանաչումը պիտի կատարուի պարզապէս դեսպաններ ղրկելով։ Ճանաչումէն անմիջապէս վերջ, բանակցութիւններ պիտի կատարուին, առեւտրական դաշնագիրներ կնքելու համար։*

## Ճափոն կ'ուզէ ձեռք անցնել Թուրքիոյ ապսպրանքները

*Լոնտոնէն կը հեռագրեն թէ Ճափոն մեծ ջանքեր կը թափէ, ձեռք անցընելու համար Թուրքիոյ հնգամեայ ծրագրին ապսպրանքները, մրցելով Անգլիոյ եւ Մ. Նահանգներուն դէմ։ Ճափոնական խմբակցութիւն մը առաջարկած է ամբողջովին նոր հիման մը վրայ դնել Թրքական հնգամեակը, աւելի հրապուրիչ պայմաններ առաջարկելով։ Այս խմբակցութիւնը յանձն կ'առնէ բոլոր մեքենաները եւ գործիքները ճարել եւ Վոսփոր փոխադրել երկարատեւ պայմանաժամով եւ հարիւրին 12 տոկոսով։ Մուրհակները պիտի ստորագրուին երկու շարքով, առաջինը՝ վեց, երկրորդը 12 տարուան համար։ Ուրիշ ապսպրանքներ ալ պիտի ընդունուին հարիւրին 15 — 20 տոկոսով։*

*Իրազեկներ կ'ըսեն թէ Մոսկուա բարոյական ճնշում պիտի բանեցնէ զինակից Թուրքիոյ վրայ, որպէսզի մերժէ Ճափոնի առաջարկները, նոյնիսկ Անգլիոյ եւ Ամերիկայի զիջելու գնով։*

## Հրէական գաղութ՝ Սիպերիոյ մէջ

*Լորտ Մարլի, որ Ամերիկա գացած եւ 80 ճառ խօսած էր քսան օրուան մէջ, դրամ հանգանակելով ի նպաստ Գերմանիոյ փախստական Հրեաներուն, Լոնտոն վերադարձաւ մեծ գոհունակութեամբ։ Կը յուսայ կէս միլիոն տոլարի հասցնել հանգանակութիւնը, որ պիտի գործածուի հրէական գաղութ մը հաստատելու Պիրո — Պիճանի մէջ (Սիպերիա)։ Խորհրդային կառավարութիւնը Անգլիոյ կէս մեծութեամբ հող տրամադրած է, որպէսզի հրէական ինքնավար հանրապետութիւն մը հաստատուի։ Միեւնոյն ատեն յանձն կ'առնէ վճարել փոխադրութեան ծախքերը, իսկ արտասահմանի մէջ կազմուած յանձնախումբը պիտի ճարէ հագուստ, գործիքներ եւայլն։*

## ՄԱՆՐ ԼՈՒՐԵՐ

*ՊՈՒԼՂԱՐԻՈՅ* բանակին սպարապետը, Զօր. Նէվքով, ընդունուեցաւ նախագահ Հինտէնպուրկի կողմէ։ (Կը յիշուի թէ վերջերս Պոլիս թագաւորն ալ Պերլին գնաց)։

*ԹԷՀՐԱՆԻ ՄԷՋ ՁԵՐԲԱԿԱԼՈՒԵՑԱՒ* հրէշ մը, որ 33 հոգի սպաննած է։ (Լաւ կարդացէք, — երեսուն երեք...)։

### ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Տէր Ներսէսեան ընտանիքը, եղբայրները, քոյրերը, ազգականները եւ պարագաները իրենց խորին շնորհակալութիւնը կը յայտնեն ամէն անոնց որոնք անձամբ, գրաւոր եւ ծաղկեպսակով իրենց ցաւակցութիւնը եւ համակրանքը յայտնեցին ողբացեալ ՏԻՐԱՆ ՏԷՐ ՆԵՐՍԷՍԵԱՆի ցաւալի եւ անակնկալ մահուան առթիւ։



*ՓԱՐԻԶԻ Աղքատախնամի Վարչութիւնը շնորհակալութեամբ կը ծանուցանէ թէ տարաբախտ Պ. Տիրան Տէր Ներսէսեանի մահուան առթիւ ստացած է, փոխան ծաղկեպսակի, հետեւեալ նուիրատուութիւնները. — Պ. Պ. Մ. Բամպուքճեան՝* 50 *ֆրանք, Մանուկեան եղբարք՝* 100 *ֆր.*

*ՍԷՆ Թ'ԱՆԹՈՒԱՆ Բամբամեր Ռօզըրէ (Մարսէյլ), «Եփրատ» Մանկապարտէզի Հոգաբարձութեան կազմակերպած պարգեւաբաշխութենան շահած են հետեւեալ թիւերը.—* 279, 312, 234, 053, 524, 090. *Անձամբ կամ նամակաւ դիմել վերոյիշեալ հասցէին մինչեւ մէկ ամիս։ Անկէ վերջ դիմումները նկատի չեն առնուիր։*




Le Gérant: H. STEPHAN

Imprimerie A. DER (AGOPIAN)

17, Rue Damesme, PARIS (13e)

*Այսպէս, մէկ շաբաթէն, մարտ 24ին պիտի բացուին Շաթօ տը Վէնսէնի (գիծ թիւ 1) եւ Իսի-լէ-Մուլինոյի (թիւ 12) ճիւղերը: Վէնսէնի կողմը երեք նոր կայարաններ բացուած են,— Թուրէլ, Պէռօ եւ Շաթօ: Իսկ Իսիի կողմը՝ երկու կայարաններ,— Փըթի Մէնաժ եւ Մէրի: Առաջինները ունին 105 մեթր երկայնութիւն, իսկ միւսները՝ 75 մեթր:*

## ՎԻՃԱԿԱՀԱՆՈՒԹԵԱՆ ՏՈՄՍԱԿՆԵՐԸ ԿԵՂԾԵՐ ԷԻՆ

*Վեցական ամիս բանտարկութեան դատապարտուեցան Սքիարի եւ Ժուանօ, որոնք փետրուար 7ին փորձեր էին մէկ միլիոն փրանքի գումար մը գանձել ազգ. վիճակահանութեան պարգեւներէն, երկու կեղծուած տոմսակներով:*

## « ԶԳԱՍՏՈՒԹԵԱՆ ԳՕՏԻ » ԿԱՊԵԼ ՏՈՒԱԾ ԷՐ

*Ութ օր բանտարկութեան դատապարտուեցաւ նախանձոտ մարդ մը, Լիթիէռ, որ զգաստութեան գօտի կապել տուած էր կնոջը: Ինչպէս գրած ենք ժամանակին, այր եւ կին խանութ մը ներկայանալով, չափ առնել տուած եւ 350 փրանքի գօտի մը գնած էին: Խանութպանը գօտին յանձնելէ յետոյ, բանալին տուած էր ամուսնին, պատուիրելով դրամապանակին մէջ պահել զայն եւ չկորսնցնել: Ատեն մը վերջը, սակայն, տիկինը ոստիկանութեան ներկայանալով կը գանգատի թէ բռնութեան տակ է: Դատարանը մեղմացուցիչ պարագաները նկատի առնելով, թեթեւ պատիժ մը եւ 50 ֆր. տուգանք սահմանեց, որոնք չպիտի գործադրուին, ըստ սովորութեան:*

## ՀԵԾԵԼԱՆՈՒՈՐԴՆԵՐՈՒ «ՎԵՑՕՐԵԱԿԸ»

*Փարիզի «վեցօրեակ»ի մրցումները նոյն թափով կը շարունակուին Վէլօտրօմ տ'Իվէրի մէջ: Մինչեւ Ուրբաթ իրիկուն դասաւորման գլուխը կը գտնուէր Իտալացի Կուէռա տի Փաքօ, ունենալով 186 նշանակէտ:*

*Իսկ երէկ գիշերուան մրցումը աւելի հետաքրքրութիւն ստեղծեց, որովհետեւ միւս զոյգ հեծելանուորդները ամէն ջանք թափեցին, գոնէ հաւասարելու: Բայց իտալացի հեծելանուորդները շատ վարպետութեամբ կը մրցին:*



Այրի Տիկին Ազնիւ Գազազեան, Օր. Հրանուշ եւ Արաքսի Գազազեաններ, Յակոբ Գազազեան (Պուլկարիա), Վաչեան, Միհրան, Հայկ Գազազեան (Թիֆլիս), Մանուկ, Մամիկոն, Մարիամ, Սրբուհի, Եղիսաբեթ Գազազեան (Գերմանիա), Գարեգին, Արշալոյս, Միհրդատ, Գրիգոր, Արտաւազդ (Ախալցխա), Այրի Տիկին Մանուկ Գազազեան (Վլատիկավկաս), Այրի Տիկին Եղիսաբեթ Գազազեան եւ զաւակունք (Նալչիկ), Տէր եւ Տիկին Թագուհի Պօղոսեան (Նիժնի-Նովկորոտ), Տէր եւ Տիկին Մարիամ Չիֆտալարեան եւ զաւակունք, Աստղիկ Սիրականեան, Ալիքսան Գազազեան եւ զաւակունք (Ախալցխա), Պ. Գէորգ Պօղոսեան (Փարիզ), Տէր եւ Տիկին Գարեգին Օտապաշեան եւ զաւակունք, Տէր եւ Տիկին Խորէն Օտապաշեան, Տէր եւ Տիկին Ներսէս Օտապաշեան եւ զաւակունք (Մեքսիկա), Հայկ եւ Սուրէն Օտապաշեան (Մեքսիկա), Փայլակ Օտապաշեան (Յունաստան), Վարդան, Արամ, Արշալոյս Բրուտեան (Մեքսիկա), Տէր եւ Տիկին Արամ Ղազարեան (Ամերիկա), Արտաշէս, Մամիկոն, Վարոս եւ քոյրերը Ենգոյեաններ (Թիֆլիս) սրտի խորունկ կսկիծով կը ծանուցանեն իրենց սիրելի ամուսնոյն, հօր, եղբօր, մօրեղբօր, քեռայրին եւ ազգականին՝

### ԳԷՈՐԳ ԳԱԶԱԶԵԱՆԻ

դառնաղէտ մահը:

Յուղարկաւորութիւնը տեղի կ'ունենայ այսօր, կիրակի, կէս օրէ վերջ ժամը 2ին Hôpital St. Josephի մէջ, 1, rue Pierre Larousse, Փարիզ (14): Հանգուցեալին մարմինը պիտի ամփոփուի Thiersի գերեզմանատունը:

Այրի Տիկին Մանիա Փանոսեան, Տէր եւ Տիկին Վաչրամ Փանոսեան, Պ. Թորգոմ Փանոսեան, Պ. Խոսրով Փանոսեան, Տէր եւ Տիկին Կղեմէս Պալապանեան եւ ազգականները սրտի խորունկ կսկիծով կը ծանուցանեն իրենց հօրեղբօր եւ տաքրոջ՝

### ԳԱՌՆԻԿ ՓԱՆՈՍԵԱՆԻ

դառնաղէտ մահը:

Յուղարկաւորութիւնը տեղի կ'ունենայ այսօր, կիրակի, առաւօտեան ժամը 11ին իրենց բնակարանին մէջ 4, rue Vautière. Joinville-le-Pont: Մարմինը պիտի փոխադրուի տեղւոյն գերեզմանատունը:



### ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ

ՊԱՆԵՕ-ՔԱՇԱՆի «Յառաջդիմասիրաց» Միութիւնը իր խոր ցաւակցութիւնները կը յայտնէ Տէր եւ Տիկին Խաչատուր Աղլաղանեանի, իրենց միամեայ աղջկան՝ ՎԵՐՈՆԻԿԻ կսկծալի մահուան առթիւ՝ Փոքրիկը աշակերտուհիներէն էր տեղւոյն հայկական դպրոցին եւ իր ուշիմութեամբ եւ աշխատասիրութեամբ շատ սիրուած էր:




Le Gérant: H. STEPHAN
Imprimerie A. DER (AGOPIAN)
17, Rue Damesme, PARIS (13e)

